ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 6 1962

ԳԵՎՈՐԳ ՏԻՐԱՑՅԱՆ

# ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ «ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ» ԵՎ ՍՏՐԱԲՈՆԻ «ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ» ՄԻ ՔԱՆԻ ՏՎՅԱԼՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ Ն. Մ. Թ. III—II-ՐԴ ԴԱՐԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը» ամենատարբեր գնահատման է արժանացել ուսումնասիրողների կողմից: Ոմանք լրիվ ընդունել են համարել այդ երկը և իրենց աշխատություններում ամբողջությամբ օգտագործել նրա բոլոր տվյալները: Գիտնականների մի ուրիշ մասը բռնել է «Հայոց պատմությունը» ժխտելու ճանապարհը, փորձելով ապացուցել նրա, եթե ոչ ամբողջ, ապա գերակշռող մասի անարժանահավատությունը: Թերահավատ մոտեցում էր ցուցաբերում անցյալում Գ. Խալաթյանը[1], իսկ մեր օրերում ֆրանսիական գիտնականներ՝ Դյուպոն-Սոմերը[2] և Ռոբերը[3]:

Մի երրորդ ուղղություն իրեն նպատակ էր դրել առանց նախապաշարմունքների վեր հանել արժանահավատը, պատմականը Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ: Այս ուղղությունն է, որ հատկապես իր զարգացումն է գտել սովետական պատմագրության մեջ: Անցած տասնամյակներում հաջողվել է վերջնականապես ապացուցել «Հայոց պատմության» մի շարք հատվածների պատմական արժեքը: Հատկապես կարևոր է այն հանգամանքը, որ հայտնաբերված և արդեն գիտական շրջանառությանը արժանացած հատվածները վերաբերում են Հայաստանի քիչ ուսումնասիրված հին շրջանի պատմությանը: Պակաս նշանակություն չունի նաև այն, որ վերոհիշյալ տեղեկությունները արտացոլում են հասարակության կյանքի ամենատարբեր բնագավառները, քաղաքական պատմության, սոցիալ-տնտեսական հարաբերությունների, նյութական կուլտուրայի, պաշտամունքի: Նրանց հասարակ թվարկումը միայն կխոսի ընդգրկած հարցերի շրջանակի մեծության ու խորության մասին: Պատմական երկերում որպես կարևորագույն վկայություններ իրենց տեղն են գտել «Հայոց պատմության» հատվածները՝ ն. մ. թ. VI դարի հայ թագավորների, Երվանդի և Արտաշեսի, հելլենիստական ժամանակաշրջանի քաղաքների և հողային սեփականության ձևերի, Գառնիի հունարեն արձանագրության և Սևանի արամեատառ սահմանաքարերի, Արևի և Լուսնի, թագավորի նախնիքների պաշտամունքի մասին և այլն: Սույն դիտողությունների

[1] Армянский эпос в истории Армении Моисея Хоренского, Москва, 1896.

[2] Deux inscriptions araméennes trouvées près du lac Sevan (Arménie). Syria, v. XXV, 1946—1948, 1—2, էջ 149—155:

[3] „Revue des études grecques“, v. LXV, Janvier—Juin, 1952, Bulletin epigraphique, էջ 181—185:

նպատակն է շարունակել սկսված և վերոհիշյալ արդյունքները տված այդ աշխատանքը։

Դժվար է գերագնահատել Ստրաբոնի «Աշխարհագրության» նշանակությունը Հին Հայաստանի պատմության համար։ Այդ պատմության մի շարք հանգուցային հարցեր իրենց պարզաբանումն են գտնում «Աշխարհագրության» հակիրճ, բայց արժեքավոր տեղեկություններում։ Նրանցից շատերի ուշադիր վերանայումից հետո, կարելի է նոր եզրակացությունների գալ։

## I. ԿԱՍՊԻԱՆԵԻ (ԿԱՍԲԻՑ ԵՐԿՐԻ) ՄԱՍԻՆ

Ակադ. Հ. Մանանդյանը ուսումնասիրողների ուշադրությունն է հրավիրել Մ. Խորենացու «Հայոց պատմության» II գրքի 37—61-րդ գլուխների վրա, որպես Երվանդ IV-ի (ն. մ. թ. III դարի վերջ) և Արտաշես I-ի (ն. մ. թ. 189—160) ժամանակաշրջանի կարևորագույն աղբյուր[4]։ Հիրավի, պատմահայր մի քանի ընդարձակ տեղեկությունները Արտաշեսի Երվանդին հաջորդած լինելու, Արտաշատ քաղաքի հիմնադրման, հողերի բաժանման և սահմանաքարերի անկման մասին, հաստատվել են այլ աղբյուրների օգնությամբ՝ որպես Արտաշես I-ին վերաբերվող ստույգ հատվածներ։ Այժմ փորձենք ապացուցել նույն Արտաշեսի գործունեության նվիրված մի այլ փոքր հատվածի արժանահավատությունը։ II գրքի 53-րդ գլխում, որը վերնագրված է «Աւերումն Կասբից, եւ գրգռութիւն ընդ Սմբատայ զարմիցն Արտաշիսի եւ ընդ միմեանս», պատմահայրը խոսում է այն մասին, որ Հայոց թագավոր Արտաշեսը Պարսկաստանի մահացած Արշակ թագավորի տեղը գահ է բարձրացնում նրա որդուն, համանուն Արտաշեսին, որին չեն հնազանդվում Պատիժահար գավառի բնակիչները և ապա ավելացնում է. «Նա և Կասբից երկիրն յայն սակս ապստամբեն ի մերոյ արքայէն։ Վասն որոյ առաքէ ի վերայ նոցա Արտաշէս զՍմբատ ամենայն զօրօքն Հայոց, ինքն արքայ յուղարկ երթալով աւուրս եօթն։ Իսկ Սմբատայ երթեալ հնազանդէ զամենեսեան, բայց զերկիրն Կասբից աւերեալ՝ առեալ քան զԱրտազեան գերի ածէ ի Հայս. ընդ որս և զԶարդմանոս անուն թագաւոր նոցին»։

Նույն հատվածի հավաստիությունն ու արժեքը հանդես է գալիս, երբ այն համեմատում ենք Ստրաբոնի «Աշխարհագրության» նույն Արտաշեսին վերաբերվող վկայության հետ, որտեղ խոսվում է վերջինիս նվաճումների մասին։ Ստրաբոնը ասում է, որ մեդացիներից Արտաշեսը վերցրեց Կասպիանեն, Փավնիտիսը և Բասորոպեդան (XI, 14, 5)։ Կասպիանեի երկրամասի նույնությունը Կասբից երկրի հետ, ինչպես նաև թագավորների նույնությունը կասկած չի թողնում այն մասին, որ Խորենացու և Ստրաբոնի տեղեկությունները արտացոլում են նույն ժամանակաշրջանը և ի նկատի ունեն համարյա թե նույն դեպքը։

Ն. մ. թ. III դարում Երվանդունիների պետության տրոհման և թուլացման պայմաններում, Հայկական լեռնաշխարհի զգալի տարածություններ անցել էին հարևան ժողովուրդների և ցեղերի տնօրինության ներքո։ Արտաշես I-ի օրոք է, որ կատարվում է հայկական բոլոր հողերի վերամիավորումը, ինչպես և նվաճվում են նորերը։ Կասպիանեն ընդունված է տեղադրել

---

[4] Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. 1, Երևան, 1944, էջ 124—130։

Ատրպատականի հյուսիս-արևելյան մասում։ Աքեմենյանների ժամանակ նա իրենից ներկայացնում էր մի ընդարձակ երկիր, որը գտնվում էր Կասպից ծովի ափին[5]։ Ժամանակի ընթացքում նրա սահմանները փոքրանում են և այդ երկրի մասին հասկացողությունը աստիճանաբար փոխադրվում է դեպի մայրցամաքի խորքը[6]։ Մ. թ. VII դարում նա նույնացվում է Քուրի և Արաքսի միջև ընկած Փայտակարանի հետ[7]։

Անդրկովկասում, Ատրպատականի տիրապետության պայմաններում (Ն. մ. թ. III դարում), Կասպիանեն տարածվում էր ոչ միայն Արաքսի ստորին հոսանքից դեպի հարավ ու Կասպից ծով, այլ ըստ երևույթին նաև դեպի հյուսիս. այդպես էր նաև Ն. մ. թ. 220 թ. հետո, երբ Ատրպատականի դիրքերը թուլացան Անդրկովկասում։ Արտաշես I-ն էր, որ վերջնական հարված հասցրեց Ատրպատականի իշխանությանը Անդրկովկասում՝ նվաճելով երեք կարևոր մարզ, այդ թվում նաև Կասպիանեն։

Խորենացու մոտ խոսքը ինչ որ ապստամբության ու մարզի վերանվաճման մասին է և բացառված չէ, որ այն տեղի ունեցած լինի Արտաշեսի իսկ օրերին, Հայաստանին կցվելուց հետո[8]։

---

5 И. М. Дьяконов, История Мидии, М.—Л., 1956, էջ 343, 344.

6 К. В. Тревер, Очерки по истории и культуре Кавказской Албании: М—Л., 1959, էջ 51.

7 Նույն տեղում։

8 Պատմական արժեք ներկայացնող տեղեկություններ կարող է պահպանած լինել նաև 53-րդ գլխի սկզբի, քննության առնված հատվածի նախորդող մասը։ Ըստ մի տեղեկության, Դարեհից Արտաշես թագավորին չէին հնազանդվում Պատիժահար գավառի և շրջակայքի բնակիչները։ Պատիժահարը հնագույն ժամանակներում տեղադրվում էր Կասպից ծովի հարավ-արևմտյան անկյունում և համընկնում էր Էլբուրսի լեռնաշղթայի հետ (J. Markwart, Untersuchungen zur Geschichte von Eran, Heft II, Leipzig, 1905, էջ 71։ Պատիժահարը՝ ասորեստանյան արձանագրությունների Պատուշարրան է, որը տեղադրվում է նույն վայրում։ Տես „Ассиро-Вавилонские источники по истории Урарту“, № 68, 2, В. Д. И. 1951, № 3)։ Ստրաբոնի Պարաքոաթրաս լեռնաշղթան ուսումնասիրողների կարծիքով նույնն էր Պատիժահարի հետ (J. Markwart, նույն տեղը)։ Այն ձգվում էր Հայկական լեռնաշխարհի հարավ-արևելյան անկյունից Ատրպատականի և Մարաստանի վրայով, Կասպից ծովի երկայնքով մինչև Կասպից դռները և այնտեղից էլ դեպի արևելք (IX, 8, 1։ XI, 12, 4)։ Եթե այդ այդպես է, ապա Ն. մ. թ. առաջին դարերում և Ստրաբոնի օրոք Պատիժահար-Պարաքոաթրաս հասնում էր անմիջապես մինչև Ատրպատական։ Տվյալ դեպքում, աշխարհագրական մոտիկությունը Կասպիանեի հետ, ինչպես նաև տեքստում նրանց մասին վկայությունների անմիջական դրացիությունն ու պատմիչի պատկերմամբ նրանց միաժամանակությունը, ենթադրել են տալիս, որ Պատիժահարի շրջանի բնակիչները փորձել են ըմբոստանալ ոչ թե Դարեհից Արտաշես թագավորի դեմ, որը ի դեպ քննության առնվող ժամանակաշրջանի համար անծանոթ է, այլ հայոց Արտաշեսի դեմ։

Մյուս տեղեկությունը Հայաստանում և Պարսկաստանում երկու տարբեր, բայց համանուն (Արտաշես) թագավորների գոյության մասին է։ Այստեղ գուցե իր արտահայտությունն է գտել ավելի ուշ ժամանակաշրջանի, Արտաշես II-ի (Ն. մ. թ. 30—20) օրոք ստեղծված մի իրադրություն։ Հայտնի է, որ Արտաշես II-ը թագավորում էր Հայաստանի և Ատրպատականի վրա միաժամանակ (Т. Моммзен, „История Рима“, т. V, Москва, 1949, էջ 336, Հ. Մանանդյան, Նշվ. աշխ., էջ 285, 291, Fr. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie, Paris, էջ 781)։ Եթե ի նկատի ունենանք, որ Խորենացու մոտ Ատրպատականն ու Պարսկաստանը հաճախ նույնացվում են, ապա հնարավոր է ենթադրել, որ Խորենացին այս դրույթն սկսում է մյուս, Արտաշես II-ի հետ կապված իրադրության շարադրությունից, թեթևակի վերափոխելով այն։ Այսպիսի շփոթումների (երկու Արտաշեսների), կարելի է հանդիպել Խորենացու մոտ։ Այն կարծիքն է հայտնել,

Որպես իրական պատմական անձնավորությունների, ստուգման կարիք ունեն Սմբատ Բագրատունին և Զարդմանոս թագավորը, բայց և այնպես Խորենացու մի քանի նախադասությունները որոշակի նշանակություն են ստանում և կրկին հաստատվում է այս և հարակից գլուխների հիմքում ընկած սկզբնաղբյուրների՝ Ողիմպ քրմի մեհենական պատմության «Պարսից մատենանք»-ի և «Հայոց երգք վիպասանաց»-ի արժանահավատությունը:

## 2. ԱԿԻԼԻՍԵՆԵԻ (ԵԿԵՂՅԱՑ ԳԱՎԱՌԻ) ՄԱՍԻՆ

Ակիլիսենեի մասին Ստրաբոնի բերած տեղեկություններում մի թվացող հակասություն կա, որի պարզաբանումը կարող է նպաստել վաղ շրջանում հայ և մյուս էթնիկ տարրերի փոխհարաբերությունների, հայ ժողովրդի կազմավորման պրոցեսի ճիշտ ըմբռնմանը և մեկնաբանմանը:

Խոսելով Արտաշեսի և Զարեհի օրոք կատարված նվաճումների մասին, Ստրաբոնը նշում է, որ Ակիլիսենեն ու Անտիտավրոսի գավառը հայերը վերցրին կատաոններից (XI, 14, 5): Թեպետ Ստրաբոնը չի հիշատակում այս և մյուս նվաճումների մասին տեղեկության սկզբնաղբյուրները, բայց նրանք միանգամայն արժանահավատ են թվում: Այդ երևում է հաղորդված մանրամասնություններից, ինչպես նաև պատմական ընդհանուր պրոցեսին համապատասխանելու հանգամանքից:

Մյուս տեղեկությունները բերվում են հայերի հնագույն գաղթավայրերի կապակցությամբ: Ստրաբոնը գրում է. «Ասում են նաև, թե Արմենոսը Արմենիոն քաղաքից էր, որ գտնվում էր Բոյբեյիս լճի մոտ Ֆերեյի և Լարիսայի միջև, թե իր հետ եկողներն էլ բնակեցան Ակիլիսենեյում և Սուսպիրիդից՝ մինչև Կալաքենե և Ադիաբենե» (XI, 4, 9): Մի այլ տեղում, «Արմենոսի հետ եկողները բնակեցան Ակիլիսենեյում, որը նախապես Ծոփաց տակ էր, մյուսները Սուսպիրիտիսում՝ մինչև Կալաքենե և Ադիաբենե, Հայաստանի սահմաններից դուրս» (XI, 14, 12): Այս հատվածների աղբյուրագիտական արժեքը ևս մեծ է, քանի որ նրանց հիմքում կանգնած են ն. մ. թ. IV դարի հեղինակներ՝ Ալեքսանդր Մակեդոնացու ուղեկիցներ Կիրսիլոս Փարսալացու և Մեդիոս Լարիսացու վկայությունները[9], իսկ ինչ վերաբերում է Ակիլիսենեին, ապա նրա մասին ասածները անուղղակի կերպով հաստատվում են Հեկատեոս Միլետացու, Հերոդոտի և Քսենոֆոնի մի շարք հանրածանոթ տեղեկություններում:

Վերոհիշյալ բոլոր հատվածներից կարելի է գալ այն եզրակացության, որ Ակիլիսենեում առնվազն ն. մ. թ. VIII—VI դարերում բնակություն էին հաստատել հայերը, և որ մի քանի հարյուրամյակ անց, ամեն դեպքում ն. մ. թ. II դարի սկզբին, նույն տեղում հանդիպում ենք կատաոններին: Սրանց մասին մեր ունեցած տեղեկությունները շատ անբավարար են[10]: Ստրաբոնը կա-

օրինակ, որ Խորենացու կիրառած Արտաշես I-ի մահվան հանգամանքները փոխ են առնված Արտաշես II-ի նույն հանգամանքների նկարագրությունից (Fr. Tournebize, նշվ. աշխ., էջ 782, ծանոթ. 1, Baumgartner, Artaxias, Pauly-Wissowa, Realencyclopäedie der Klassischen Altertumswissenschaft, Dritter Halbband, Stuttgart, 1895, էջ 1326:

[9] Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 25—26:

[10] Ruge, Kataonia, Pauly-Wissowa, Realencyclopädie... X, 2. Stuttgart, 1919, էջ 2478—2479:

տաոններին համարում էր մի ինքնուրույն ժողովուրդ, որը սակայն իր ժամանակ արդեն ձուլվել էր կապադովկիացիների հետ։ Նրանց երկիրը տեղադրվում էր Եփրատից արևմուտք և կազմում Կապադովկիայի ստրատեգիաներից մեկը (XII, 1, 2)։ Կատաոններին երբեմն համարում են խեթերի հետնորդներ, որպես այդպիսիններ, բացառված չէ, որ հնագույն ժամանակներից անցած լինեն Եփրատի ձախ ափը, և տեղավորված լինեն ապագա Ակիլիսենեի տերիտորիայում։ Շատ ավելի հավանական է թվում, որ կատաոնների երևան գալը Հայկական լեռնաշխարհում, կապված լինի ավելի ուշ ժամանակաշրջանի իրադրության հետ։ Կատաոնները հիշատակվում են ն. մ. թ. IV դարից սկսած։ III դարի սկզբին նրանք անցնում են Սելևկյանների իշխանության տակ, իսկ նույն դարի ընթացքում Արիարաթ թագավորներից մեկը միացնում է նրանց երկիրը Կապադովկիային, որի ստրատեգիաներից մեկն է դառնում ուշ ժամանակաշրջանում։ Այժմ անդրադառնանք Ակիլիսենեին։ Ինչպես ցույց է տվել Ն. Ադոնցը, հին Ակիլիսենեն զբաղեցնում էր ընդարձակ մի տերիտորիա, Անտիտավրոսից մինչև արևմտյան Եփրատ, Դերջանից մինչև Ակնի շրջակայքը՝ իր մեջ ամփոփելով Հայաստանի մի շարք գավառներ[11]։ Որպես հայերի հնագույն բնակավայրերից մեկը, նա ըստ երևույթին մտնում էր ն. մ. թ. VI դարի թագավորության մեջ, սրա վերացումից հետո 13-րդ սատրապության և ապա Հայկական սատրապության Արևմտյան Հայաստան կոչվող ենթաշրջանի կազմում։ Ն. մ. թ. IV- դարի երկրորդ կեսերին Փոքր Հայքի և Երվանդունիների պետության առաջացման կապակցությամբ դժվար է ասել, թե նրանցից ո՞ւմն է պատկանել Ակիլիսենեն։ Ն. մ. թ. III դարի սկզբին Հայաստանն անցնում է սելևկյանների ազդեցության տակ։ Երվանդունիների պետությունը, որը միավորում էր Հայկական լեռնաշխարհի զգալի տարածություններ, տրոհվում է երկու մասի՝ Ծոփքի ու Կոմմագենի միացյալ պետության և բուն Հայաստանի պետության։

Հայկական պետությունների համար անբարենպաստ իրադրության պայմաններում հարևան ժողովուրդներն ու ցեղերը աշխուժանում են և ուժեղացնում իրենց ներթափանցումը Հայկական լեռնաշխարհում, երբեմն զուգակցելով էթնիկական էքսպանսիան քաղաքականի հետ[12]։ Հյուսիսային սահմաններում աշխուժանում են քարթվելա-իբերական ցեղերը, հարավ-արևելքից Ատրպատականն է, որ իր տիրապետությունն է տարածում Հայկական լեռնաշխարհի որոշ մասերի վրա, հարավից ասորական ցեղերն են ներթափանցում, իսկ արևմուտքից՝ կատաոնները։ Սրանք գտնվելով սելևկյանների տիրապետության տակ, ակտիվացան, երբ վերջիններս իշխեցին նաև Հայկական լեռնաշխարհի վրա և ն. մ. թ. III դարի ընթացքում սկսեցին, ըստ երևույթին ավելի ուժեղ թափով, անցնել Եփրատն ու տեղավորվել Ակիլիսենեում։ Ն. մ. թ. II դարի սկզբում Ակիլիսենեն միացվում է Զարեհի Ծոփքի պետությանը[13]։ Այդ մասին են խոսում աշխարհագրական նկատառումները[14], ինչպես նաև Ստրաբոնի երկու ակնարկը (XI, 14, 12։ XI, 14, 5)։

Արտաշեսի և Զարեհի, այսպես կոչված, նվաճումները առեղծվածային

[11] Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, Петербург, 1908, էջ 54—55.

[12] Գ. Տիրացյան, «Երվանդունիները Հայաստանում», ՀՍՍՌ ԳԱ Տեղեկագիր (հասարակական գիտություններ), 1958, № 6, էջ 70։

[13] Н. Адонц, նշվ. աշխ., էջ 544։ Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 117։

[14] Н. Адонц, նշվ. աշխ., էջ 56։

բնույթ են կրում, եթե ի նկատի ունենանք այն լայնածավալ տերիտորիաները, որոնք կարճ ժամանակաշրջանում միացվեցին նրանց պետություններին։ Ակիլիսենեի ճակատագիրը փայլուն կերպով բացատրում է այդ հաջողությունների իմաստը։ Ճիշտ է, Ստրաբոնի ասելով Զարեհը Ակիլիսենեն վերցնում է կատաոններից, բայց ինչպես տեսանք նույն Ստրաբոնի վկայություններից, Ակիլիսենեում դեռ վաղ ժամանակաշրջանից էին հաստատվել հայերը։ Այդ նշանակում է, որ Արտաշեսի և Զարեհի օրոք Ակիլիսենեում ըստ երևույթին գոյություն ուներ հայ-կատաոնական խառը բնակչություն, որի կատաոնական մասը բռնել էր հայանալու ուղին, եթե հաշվի առնենք այդ էպոխայում ամբողջ լեռնաշխարհով մեկ ծավալվող հայերի էթնոգենեզիսի ընդհանուր պրոցեսները, որոնք ի վերջո, նույն Ստրաբոնի վկայությամբ հանգեցին այն բանին, որ բազմազան էթնիկ տարրերը, միալեզու, այսինքն հայախոս դարձան։ Հայկական բնակչության առկայությունը հնուց ի վեր լեռնաշխարհի հատվածներից մեկում՝ Ակիլիսենեում անհամեմատ հեշտացրեց վերջինիս նվաճումը, ավելի ճիշտ միացումը Ծոփքին։

## 3. ՆԱԽՆԻՆԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ

Մովսես Խորենացին հետաքրքիր և կարևոր վկայություններ է թողել թագավորական դինաստիայի մեռած անդամների պաշտամունքի գոյության մասին Հին Հայաստանում։ Այդ վկայությունները մանրամասնորեն քննության են առնվել Գ. Սարգսյանի կողմից[15]։

Պարզվում է, որ Հին Հայաստանի մի քանի տաճարներում, Արմավիրում, Բագարանում, Արտաշատում կանգնեցված են եղել նաև թագավորի նախնիների արձաններ, որոնք պաշտվել են մյուս աստվածությունների արձանների հետ մեկտեղ։

Չնայած իր կրոնական այս շղարշին, նախնիների՝ իսկ հետագայում նաև իշխող միապետերի պաշտամունքը իրենից ներկայացնում է քաղաքական մի ինստիտուտ, որի նպատակն է եղել ամրապնդել դինաստիայի և թագավորի, որպես ստրկատիրական պետության ղեկավարի՝ հեղինակությունը։

Այստեղ հնարավոր է մի քանի խոսք ասել Հայաստանում նախնիների պաշտամունքի հաստատման ժամանակաշրջանի մասին։ Գ. Սարգսյանը իրավացիորեն նշում է այս ակտի ճիշտ թվարկման դժվարության մասին, բայց հակված է կարծելու, որ այն կատարվել է Արտաշես I-ի (189—160) օրոք[16]։ Մ. Խորենացու վկայություններից, սակայն, կարելի է այլ եզրակացությունների գալ։ «Հայոց պատմության» այս առումով մեզ հետաքրքրող հատվածները հետևյալն են.

1. Վաղարշակ թագավորը, «...յետ այսր ամենայնի մեհեան շինեալ յԱրմաւիր՝ անդրիս հաստատէ արեգական և լուսնի և իւրոց նախնեացն»։ (II, 8)։

2. Երվանդ թագավորը, «...շինեաց քաղաք փոքր ի վերայ գետոյն Ախուրենայ, և անուանեաց Բագարան այս ինքն թէ ի նմա զբագնաց յօրինեալ է զկայմութիւն. և փոխեաց անդր զամենայն զկուռսն որ յԱրմաւիր»։ (II, 40)։

3. Արտաշես թագավորը, «...շինէ քաղաք յիւր անուն անուանեալ Արտա-

---

[15] Город древней Армении (автореферат канд. диссертации), 1956, նույնի, Тигранакерт, Москва, 1960, էջ 33—39.

[16] Նշվ. աշխ., էջ 38։

շատ։ Ձեռնտու լինի նմա և Երասխ փայտիւք մայրեաց. վասն որոյ անաշխատ և երագ շինեալ՝ կանգնէ ի նմա մեհեան, և փոխէ ի նա ի Բագարանէ զպատկերն Արտեմիդեայ և զամենայն կուռս հայրենիս» (II, 49)։

Գ. «Բայց զանդրիսն, զոր արար Վաղարշակ պատկեր իւրոց նախնեացն հանդերձ արեգակամբ և լուսնիւ յԱրմաւիր, և փոխեցան յԱրմաւիրայ ի Բագարան և դարձեալ յԱրտաշատ՝ զայնոսիկ փշրէ Արտաշիր» (II, 77)։

Դ. Սարգսյանի կարծիքով, այս չորս վկայություններում Պատմահայրը մեզ հասցրել է նախնիների պաշտամունքի մասին մի ամբողջական պատմություն, որի տեղեկությունները վերցված են չորս, տարբեր բնույթի սկզբնաղբյուրներից, մի հանգամանք, որը խոսում է այդ տեղեկությունների արժանահավատության մասին[17]։

Խորենացու վերջին վկայությունից (№ 4) երևում է, որ Արտաշիր Սասանյանը կործանեց Արտաշատի բոլոր արձանները, այդ թվում նաև նախնիների արձանները, որոնք բերված էին Բագարանից Արտաշատ, իսկ Արմավիրից էլ Բագարան։ Նախորդ (№ 3) վկայությունից երևում է, որ այս արձանները Բագարանից Արտաշատ է բերել Արտաշեսը, իսկ № 2 հատվածից երևում է, որ Արմավիրից Բագարան է բերել Երվանդը։

Առաջին (№ 1) և վերջին (№ 4) վկայություններից բխում է, որ մինչև այս տեղափոխությունները, արձանները կանգնեցված են եղել Արմավիրում՝ ոմն Վաղարշակի օրոք։

Ստացվում է այսպիսով հետևյալ պատկերը։ Դեռևս Արտաշեսից ու Երվանդից առաջ, Վաղարշակի օրոք, նախնիների արձանները տեղադրվում են Արմավիրի մեհյանում։ Մայրաքաղաքը Երվանդաշատ փոխադրելու կապակցությամբ Երվանդը կուռքերը տանում է Բագարան։ Այստեղից էլ, բայց արդեն Արտաշեսի օրոք, կուռքերը փոխադրվում են նորակառույց Արտաշատ քաղաքը։

Խորենացու վկայությունները պարզորոշ ցույց են տալիս, որ Արտաշեսից առաջ դեռ Արմավիրում և Բագարանում կանգնած են եղել այս արձանները։ Հաստատ չէ, տվյալ դեպքում, Վաղարշակի սույն պատմական անձնավորություն լինելը, այս պատճառով կարծում ենք, որ արձանները հաստատված են եղել Արմավիրում, Երվանդ IV-ի նախորդների կամ ավելի ճիշտ՝ հենց նույն Երվանդի օրոք, որը ինչպես տեսանք Խորենացու համապատասխան վկայությունից, Արմավիրից արձանները տեղափոխել տվեց Բագարան։

Նախնիների արձանների առկայությունը Արմավիրի և Բագարանի մեհյաններում Արտաշես I-ի նախորդի՝ Երվանդ IV-ի իշխանության տարիներին, անկասկած մի փաստ է նախնիների պաշտամունքի բուն ինստիտուտի գոյության մասին նույն Երվանդ IV-ի օրոք։

Նախնիների, ինչպես նաև իշխող թագավորի պաշտամունքը հելլենիստական երկրներում առաջ է եկել որպես այդ երկրների սոցիալական կառուցվածքի արդյունքներից մեկը։ Նա պետք է համապատասխաներ քաղաքական այն խնդիրներին, որոնք առաջադրվում էին այս երկրների հասարակարգի կողմից, և որպես այդպիսին կոչված էր նպաստելու ստրկատերերի կոլեկտիվի ղեկավարի՝ միապետի հեղինակության ամրապնդմանը։ Պետք է ենթադրել, որ նույն ներքին պատճառները խթանեցին այս, վերջին հաշվով քաղաքական ինստի-

[17] Город древней Армении (автореферат канд. диссертации), 1956, նույնի Тигранакерт, Москва, 1960, էջ 37։

տուտի ձևավորմանը Երվանդյան Հայաստանում։ Որոշ դեր պետք է վերագրել նաև արտաքին ազդեցություններին ու հաշվի առնել հելլենիստական երկրների փորձը։ Ինչպես վկայում են Արմավիրի արձանագրությունները, պետական կյանքի մի շարք ասպարեզներում հնարավոր չէր լինում Սելևկյան պետության տրադիցիաների կողքով անցնել։ Ինչ վերաբերում է նախնիների պաշտամունքին Սելևկյան պետության մեջ, ապա վերջին ուսումնասիրություններից բխում է, որ նա առաջացել է ն. մ. թ. III դարի առաջին կեսում, Անտիոքոս I-ի օրոք։ Փառաբանվելով ու զարգանալով հաջորդների օրոք ևս, Անտիոքոս III-ի (223—187) ժամանակ առնվազն, վեր է ածվել նաև կենդանի, իշխող թագավորի պաշտամունքի[18]։

Ինչպես տեսնում ենք, Հայաստանում նախնիների պաշտամունքի հաստատման ավելի վաղ թվագրումը (ն. մ. թ. III դ. վերջ) չի հակասում հելլենիստական երկրների ընդհանուր դրությանը այս ասպարեզում։ Երվանդ IV-ի իշխանության տարիներին Արմավիրում և ապա Բագարանի մեհյաններում կանգնեցված պետք է լինեին նախորդ Երվանդունի իշխանավորների արձանները, ինչպես գուցե նաև աքեմենյան նախնիների արձաններ, որոնց միջև ազգակցական սերտ կապեր գոյություն ունեին։ Կասկած չկա, որ Արտաշես I-ի ժամանակ այս ինստիտուտի քաղաքական իմաստը առավել խորացավ, նոր՝ միասնական պետության և դասակարգային ընդգծված շերտավորում ապրող հասարակության խնդիրներից անմիջականորեն բխող թագավորի հեղինակությունն է՛լ ավելի ամրապնդելու ձգտման կապակցությամբ։ Արտաշես թագավորի օրոք նախնիների պաշտամունքի վերահաստատման հանգամանքները բացահայտում են նրա քաղաքական նպատակադրության և այլ ասպեկտներ ևս, որոնք հնարավոր է վեր հանել Սևանի արամեատառ արձանագրությունների նոր տվյալների լույսի տակ։ Արտաշես և Երվանդ թագավորների միջև որևէ ազգակցական կապի մասին սկզբնաղբյուրները ոչ մի տվյալ չեն հաղորդում։ Դատելով Խորենացու վկայություններից, երկու անձնավորությունների միջև խիստ հակամարտություն կար, որը լուծվեց պատերազմի միջոցով ու Երվանդի սպանությամբ։ Ինչպես հայտնի է Սևանի կոթողների վրա Արտաշեսը իրեն հորջորջում է Երվանդունի, իրեն նախորդող դինաստիայի հետ ազգակցական կապ ստեղծելու ակնհայտ նպատակով[19]։ Ինչպես տեսնում ենք, նույն ձգտումը նա փորձում է կենսագործել նաև կրոնա-քաղաքական այս ասպարեզում, առանց այլևայլի յուրացնելով Երվանդի արձանները, իր նախնիների օրինական պաշտամունքի առարկա դարձնելու նպատակով, տեղադրելով դրանք նորակառույց իր մայրաքաղաքի մեհյաններում։

## 4. ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐՏԱՇԵՍ I-Ի ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ ԵՎ Ն. Մ. Թ. ԵՐՐՈՐԴ ԴԱՐԻ ՎԵՐՋԻ ԴԵՊՔԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀՈՒՄ

Սևանի արամեական արձանագրությունները նորից առաջ քաշեցին Արտաշես I-ի ծագման հարցը, մի հանգամանք, որը նոր հետաքրքրություն է ստանում, եթե հաշվի առնենք Մովսես Խորենացու մի քանի անտեսված տվյալներն այս մասին։

[18] L. Cerfaux, J. Tondriau, Le culte des souverains dans la civilisation greco-romain, New York—Paris, 1957, էջ 235—236։

[19] Գ. Տիրացյան, «Արտաշես Ա-ի արամեատառ նորագյուտ արձանագրությունը», «Տեղեկագիր», 1957, № 10, էջ 108։

Այս հարցին անդրադարձել է դեռևս Ն. Ադոնցը։ Ըստ նրա կարծիքի, Արտաշեսյանները սերվում են ն. մ. թ. VI դարի թագավորներից։ Որպես ապացույց նա բերում էր երկու դինաստիաներում Տիգրան անվան առկայության փաստը[20]։

Ուշադրության արժանի են Խորենացու տվյալները Արտաշեսի մասին։ «Հայոց պատմության» Երվանդին և Արտաշեսին նվիրված գլուխներում վերջինս բազմաթիվ անգամ մար է անվանված։ Օրինակ, Երվանդը Պարսից թագավորին ուղղած նամակում գրում է. «Արիին իմ և հարազատութիւն, ընդէ՞ր սնուցանես զՄարդ Արտաշէս հակառակ ինձ և իմոյ թագաւորութեանս...», «...Նա չէ որդի Սանատրկոյ, այլ ընդ խաբս գտեալ Սմբատայ զՄար ումն տղայ՝ բաջաղի»։ Սմբատին ուղղված իր նամակում գրում է, թե «Ընդէ՞ր այդքան անտանի աշխատութիւն կրես. խաբեալ ի ստնտուէդ՝ սնուցանես զորդի Մարից հակառակ ինձ»։ (II, 38)։ Մի այլ տեղում նկարագրելով Արտաշեսի պատերազմական գործողությունները՝ գրում է. «Եւ ինքն չուեալ ի քաղաքն Երուանդայ. յառաջ քան զմիջօրեայ հասեալ ի դաստակերտն Երուանդայ և միաբան գոչմամբ հրամայեաց աղաղակել զօրացն՝ «Մար ամատ» որ թարգմանի Մարս եկն, յիշեցուցանելով զթշնամանսն, զոր յղէր Երուանդ առ թագաւորն Պարսից և առ Սմբատ, Մար զնա կոչելով։ Յայս ի սոյն ձայն անուանեցաւ դաստակերտն Մարմէտ, իբր ի կամաց Արտաշիսի...» (II, 47)։

Խորենացու և ուրիշ հայ պատմիչների մոտ հիշատակվող մարեր—մարք պետք է նույնացնել միայն մեդացիների հետ և ոչ մի դեպքում մարդերի ցեղի հետ, չնայած անունների նմանության, սակայն այս տերմինում հայկական ավանդությունը չի փոխանցել մեզ մեդացիների անվան հին ձևը։ Գրաբարյան մար-ը պարթևական ծագում ունի և սրա mað ձևի օրինաչափական վերարտադրությունն է, որը իր հերթին օրինաչափորեն համապատասխանում է հին, բուն mada ձևին։ Ինչ վերաբերում է հայերեն մեդացի ձևին, ապա նա էլ հունական μῆδοι տերմինի վերարտադրությունն է[21]։ Ճիշտ է, լեզվագիտական այս նկատառումները խոսում են այն մասին, որ այս տվյալները հաղորդող սկզբնաղբյուրները վերագրում են պարթևական ժամանակաշրջանին, կամ եթե ավելի վաղ են, ապա մեզ հետաքրքրող տերմինները համապատասխանեցվել են ավելի ուշ շրջանի պարսկերեն և հայերեն լեզվի կանոններին, բայց չնայած դրան, պատմական կոնտեքստի մեջ վերցված, նրանք պահպանում են իրենց արժեքը։ «Հայոց պատմության» տեքստի քննական ուսումնասիրումը գնալով հաստատում է Խորենացու օգտագործած սկզբնաղբյուրների արժանահավատությունը։ Այդ վերաբերում է նաև Արտաշեսի ծագումը լուսաբանող համապատասխան գլուխների սկզբնաղբյուրներին, դրանց թվում պետք է կարծել Անիի Ողյումպ քրմի մեհենական պատմությունը, որը, բարեբախտաբար, հականե հանվանե հիշատակվում է Պատմահոր կողմից (II, 48)։

20 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 390, ծանոթ. 1, էջ 427, ծանոթ. 1։ Այս տեսակետին կարծես չեն հակասում աղբյուրագիտական նկատառումները։ Գողթան երգիչները, որոնք պատմում են ն. մ. թ. VI դարի դեպքերի մասին, հաղորդում են նաև Արտաշեսի ու իր մարական շրջապատի մասին, ընդ որում Խորենացին այդ երկու էպոսներին վերաբերող տեղեկությունները ներկայացնում է փաստորեն որպես ժողովրդական էպոսի մի ամբողջական ցիկլ (տես II, 30 և II, 49 և 51)։

21 Տես И. М. Дьяконов, նշվ. աշխ., էջ 44, ծանոթ. 1, էջ 352, ծանոթ. 2, էջ 354, ծանոթ. 1։

Արտաշեսի մարական կամ ավելի ճիշտ՝ ատրպատականյան (մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի համար այդ երկու տերմինները հունական դասական պատմագրության, ինչպես նաև հայկական պատմագրության համար գրեթե նույն իմաստն ունեն) ծագման մասին Խորենացու տեղեկությունները ձայնակցում են մեր՝ հայկական մի շարք տոհմերի իրանա-մարական ծագման մասին գիտելիքների հետ։ Իրանական էթնիկական տարրի ներթափանցումը Հայկական լեռնաշխարհը սկսվում է վաղ ժամանակաշրջաններից և կարևոր երևույթ է հայ ժողովրդի կազմավորման պրոցեսում։

Նա սկսվել է դեռևս ուրարտական ժամանակաշրջանում, բայց աշխուժացել է առավելապես մեդական պետության հզորացման պայմաններում։ Մեդացիները զբաղեցնում էին ըստ երևույթին դեռ VII—VI դարերից սկսած որոշ տերիտորիաներ Հայկական լեռնաշխարհում, հատկապես նրա հարավային ու հարավ-արևելյան հատվածներում։ Պետք է սակայն նշել, որ մեդացիների էթնիկական կազմը միատարր չէր, և որ Հայկական լեռնաշխարհին սահմանակից շրջաններում նշանակալից էր խուռի-մատիենների դերը[22]։ Ն. մ. թ. V դարում Հերոդոտի վկայությամբ նրանք զբաղեցնում էին Հայաստանի հատկապես հարավ-արևելյան և Ատրպատականի հյուսիս-արևմտյան շրջանները՝ մտնելով Հայկական լեռնաշխարհի մի շարք ցեղերի հետ 18-րդ սատրապության մեջ։ Մեդացիները և մատիենները նույնպես ներգրավվեցին հայ ժողովրդի կազմավորման պրոցեսի մեջ։ Նրանց մասին որոշակի հիշատակություններ են պահպանվել Մովսես Խորենացու մոտ։ Հայոց Տիգրան Երվանդյան թագավորի օրոք, Արարատից դեպի հարավ ընկնող տերիտորիայում, մեդական գաղթականության առկայության մասին վկայությունները արտացոլում են VII—VI դարերի վերահիշյալ իրադրությունը[23]։

Այս գաղթականությունից է սերված համարվում Մուրացանների տոհմը, որի անվան մեջ պահպանված է մար տերմինը[24]։

Իրանական էթնիկական հոսանքը չի դադարում նաև հաջորդ դարերում։ Մուտք են գործում տոհմեր, որոնք իրենց տեղն են գրավում հայ ստրկատիրական ու ապա ֆեոդալական ավագանու շարքերում, ինչպես նաև ամբողջական ցեղեր, որոնց մեծ մասը ձուլվում է։

Աշխարհագրական դիրքի բերումով մեծ էր Ատրպատականի դերն այս պրոցեսում։ Ն. Ադոնցը, որը մանրամասնությամբ ուսումնասիրել է հայկական տոհմերի ծննդաբանությունը, առանձնացնում է մի խումբ, որը ըստ նրա կարծիքի, իրանական կամ ավելի ճիշտ ատրպատականյան ծագում ունի։ Տոհմանունների վերլուծության, ինչպես նաև սկզբնական դոմենների տեղագրության տվյալներից Ն. Ադոնցը եկել է եզրակացությունների, որոնք ընդունելի են համարվում հետազոտողների կողմից։

Բագրատունիների տոհմի մասին Ադոնցը ասում է, որ այն ծնունդ է առել հայ-իրանական էթնիկական հողի վրա, և որ այդ տոհմի սկզբնական հայրենիքը գտնվել է Հայկական լեռնաշխարհի Ատրպատականյան ծայրամասում[25]։

Իրանական (ատրպատականյան) ծագում ունեն, ըստ նրա կարծիքի, նաև

[22] И. М. Дьяконов, նշվ. աշխ., էջ 388, ծանոթ. 2, էջ 339, 452 և այլն։
[23] Ս. Տ. Երեմյանի կարծիքը, տես նույն աշխ., էջ 338, էջ 353. ծանոթ. 3։
[24] Н. Адонц, նշվ. աշխ., էջ 419—420։
[25] Н. Адонц, նշվ. աշխ., էջ 307—308, 412—413, նաև ծանոթ. 3։

Ամատունիները և գուցե Մանդակունիները, ինչպես որ վկայում է նրանց տոհմանունների վերլուծությունը, իսկ առաջինների նաև հնագույն դամբանները Մակուի շրջանում, ինչպես և Մովսես Խորենացու վկայությունը նրանց՝ «Արևաց աշխարհից» գալու մասին (II, 57)[26]։ «Ատրպատականի հողերից,— գրում է Ն. Ադոնցը,—մուտք էին գործում նաև ցեղային առանձին խմբեր։ Դեռ հնուց Ատրպատականը և Կասպից ծովի առափնյա շրջանները բնակեցված էին բազմաթիվ ցեղերով, որոնք վարում էին խաշնարածների կամ քոչվոր կյանք։ Տիգրանի օրոք, նրանցից շատերը, որոնք թափառում էին Արաքսի երկայնքով, նրան օգնության հասան հռոմեացիների դեմ»[27]։ Արդեն Քսենոփոնի ժամանակ Հայկական լեռնաշխարհում կարելի է հանդիպել Ատրպատականցի մարդերին[28]։ Հատկապես ուշադրավ են ուտիացիների ներթափանցման ուղիները. որոնք նախկինում ապրում էին Արաքսից հարավ, Ատրպատականում և ժամանակի ընթացքում անցնելով Արաքսից հյուսիս, գետը դարձավ սահմանը նրանց և Ատրպատականի միջև։ Հետագայում ուտիացիները փոխադրվեցին Քուռի հովտի մասերը, այնտեղ, որտեղ գտնվում էր Ուտիքը միջին դարերում[29]։

Գծագրված այս պատկերը ընդունելի է դարձնում Արտաշեսի ծագումը պարզաբանող Խորենացու տվյալները։

Արտաշեսի ծագման հարցերը կապված են ն. մ. թ. III—II դարերի շեմի դեպքերի հետ, որոնք ունենալով նաև ինքնուրույն նշանակություն Հին Հայաստանի պատմության համար, ուսումնասիրության կարոտ են։ Օրինակ, չի որոշված մի շարք կարևոր իրադարձությունների ստույգ ժամանակը, չի պարզված նրանց հաջորդականությունը։ Մեզ հայտնի չեն Սելևկյան գերիշխանության հաստատման հանգամանքներն ու ժամանակը։ Չգիտենք, թե մինչև երբ է իշխել Երվանդ IV-ը (էլ չենք խոսում այն մասին, թե մեզ անհայտ է նրա գահակալման թվականը) և հետևաբար, թե ե՞րբ տեղի ունեցավ Երվանդի ու Արտաշեսի միջև պատերազմը։ Անհայտ է նաև Հայկական լեռնաշխարհում ստրատեգոսների հաստատման ժամանակը։ Բոլոր այս հարցերն իրար հետ կապված լինելով պետք է քննել միասին վերցրած։

Սելևկյանների նախնական տիրապետությունը Հայկական լեռնաշխարհում հաստատվել էր մոտավորապես ն. մ. թ. IV—III դարերի շեմին։ Սակայն, ինչպես ճիշտ է նկատել ակադ. Մանանդյանը, հայկական պետությունները կարողացել էին պահպանել իրենց ներքին ինքնուրույնությունը և կառավարվում էին տեղական թագավորների ձեռքով[30]։ Չնայած իրենց կախյալ վիճակին, հայկական պետությունները հաջողությամբ մասնակցում էին Փոքր Ասիայի քաղաքական կյանքին։

Անտիոքոս III-ի (223—187) օրոք է, որ Սելևկյան պետության վերաբերմունքը հայկական պետությունների նկատմամբ կտրականապես փոխվում է։ Այդ փոփոխությունը մասամբ պայմանավորված էր նոր խնդիրներով, որոնք հասունացել էին ն. մ. թ. III դարում Ասիայում։ Սելևկյանների դիրքերի թուլացման հետևանքով այստեղի երկրները ինքնուրույնացման ճամփա էին

[26] Н. Адонц, նշվ. աշխ., 321, ծանոթ. 2 և էջ 419։
[27] Նշվ. աշխ., էջ 420։
[28] Նշվ. աշխ., էջ 57։
[29] Նշվ. աշխ., էջ 420։
[30] Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 102։





րանել։ Սելևկոս II-ի փորձերը, վերականգնելու նախկին դրությունը, անհաջողության էր մատնվել։

Եգիպտոսի հետ հաշտություն կնքելուց և Փոքր Ասիայում վտանգավոր մի ախոյանից ազատվելուց հետո, Անտիոքոս III-ն ամբողջ ուժով կարող էր ձեռնամուխ լինել արևելյան մարզերի հպատակեցման գործին, որը պետք է կենսագործվեր դեպի Ասիայի խորքերը ծրագրվող ռազմական արշավանքի օգնությամբ։

Արևելյան արշավանքի նպատակների և հետևանքների հետ կապված է, անշուշտ, Սելևկյան պետության նոր քաղաքականությունը հայկական պետությունների նկատմամբ, որը հանգեց այդ պետությունների վերացմանը և սելևկյան գերիշխանության հաստատմանը ի դեմս ստրատեգոսներ Արտաշեսի և Զարեհի։

Այս կապակցությամբ պետք է նորից դիմել Ստրաբոնի՝ Հայաստանում սելևկյան տիրապետության հաստատման մասին հակիրճ, բայց կարևոր տեղեկությանը։ Հայաստանի հին պատմության մասին խոսելուց հետո նա նշում է. «Վերջին իշխողն էր Օրոնտասը՝ շառավիղը Հիդարնեսի, որը մեկն էր յոթը պարսիկներից։ Այնուհետև երկիրը բաժանեցին երկու մասի՝ Արտաքսիասը և Զարիադրեսը, որոնք ստրատեգոսներն էին Անտիոքոս Մեծի, որը պատերազմել էր հռոմեացիների դեմ։ Սրանք իշխում էին նախ թագավորի հանձնարարությամբ, բայց սրա պարտությունից հետո հարելով հռոմեացիներին, իշխեցին իրենք առանձին և հաստատվեցին թագավորներ» (XI, 14, 15)։

Ժամանակագրական միակ ստույգ կռվանն այստեղ Անտիոքոս III-ի պարտությունն է, որը, ինչպես հայտնի է, տեղի ունեցավ Մագնեզիայում 190 թ., և նրա ստրատեգոսների՝ Արտաշեսի և Զարեհի գահակալությունը նույն այս ժամանակ, որպես անկախ թագավորներ։ Մյուս հարցերի մասին, թե ե՞րբ մեռավ Երվանդ IV-ը, ե՞րբ երկիրը բաժանվեց երկու մասի և ե՞րբ կարգվեցին Արտաշեսն ու Զարեհը որպես ստրատեգոսներ, Ստրաբոնը ոչինչ չի ասում։

Ճիշտ են այն ուսումնասիրողները, որոնք այս դեպքերը տեղադրում են 212 թ. հետո, երբ փաստորեն սկսվեց սելևկյան միջամտությունը Հայկական լեռնաշխարհում[31]։ «Կարճ ժամանակից հետո», ինչպես հայտնի է, Քսերքսեսը մեջտեղից վերացվեց, որով հնարավորություն ստեղծվեց Ծոփքում ստրատեգոս կարգելու համար։ Քանի որ Ստրաբոնի տեղեկությունից բխում է, թե Երվանդից հետո ստրատեգոսները ստանձնեցին իշխանությունը, Երվանդի մահը պետք է տեղի ունեցած լինի Քսերքսեսի վերացումից հետո[32]։

---

[31] Ed. Meyer, Blüte und Niedergang des Hellenismus in Asien, Berlin, 1925, էջ 50—51. H. Bengston, Die Strategie in der hellenistischen Zeit, հ II, München, 1944, էջ 157, ծան. 1։

[32] Մարկվարտի կարծիքով Արտաշեսը ստրատեգոս էր նշանակվել դեռես 220 թ., Անտիոքոս III-ի Ատրպատականի կատարած հաջող արշավանքի կապակցությամբ, երբ Ատրպատականի դիրքերը թուլացան Հայկական լեռնաշխարհում, իսկ սելևկյանները ուժեղացան (Eransahr Berlin, 1901, էջ 108)։ Այս կարծիքը հակասում է Ստրաբոնի տվյալներին։ Ինչպես հայտնի է, Ստրաբոնը Երվանդից հետո է տեղադրում ստրատեգոսներին։ Սակայն եթե այդ կատարվեր 220 թվականին, ինչպես ըստ էության կարծում է Մարկվարտը, ապա Զարեհը չէր կարող Ծոփքի ստրատեգոս լինել, քանի որ այնտեղ դեռ 212 թ. հիշատակվում է Քսերքսես թագավորը։ Միայն սրա վերացումից հետո է, որ այդպիսի հնարավորություններ ստեղծվեցին։

220 թ. կամ նույնիսկ ավելի ուշ, Ատրպատականի տիրապետության պայմաններում, Այրարատում գահակալել էր Երվանդ IV-ը, որը թագավորեց մինչև Անտիոքոսի Արևելյան արշավանքի ժամանակները։

Միևնույն ժամանակ բավականին անհասկանալի է Ստրաբոնի տեղեկությունն այն մասին, որ Երվանդի մահից հետո երկիրը բաժանվեց երկու մասի։ Դեռևս III դարի առաջին կեսից սկսած բուն Հայաստանում կային երկու պետություններ. դրանցից Ծոփքի վերջին թագավորն էր Քսերքսեսը, իսկ բուն Հայաստանի վերջին թագավորը՝ Երվանդը։ Ուրեմն այստեղ Ստրաբոնը ի նկատի ունի ավելի հին ժամանակները, երբ լեռնաշխարհի մեծ մասը մտնում էր Երվանդունիների միասնական պետության կազմի մեջ (ն. մ. թ. IV դ.), կամ Քսերքսեսի սպանությունից հետո Ծոփքը միացվեց կարճ ժամանակի համար Երվանդի պետությանը և երբ Երվանդը մահացավ, ամբողջ տերիտորիան նորից բաժանվեց երկու մասի և հանձնվեց ստրատեգոսներին[33]։

Այնպես, ինչպես որ Հայաստանի արևելքում և արևմուտքում ստրատեգոսների կարգումը քաղաքական միասնական մի ակտ էր, թվում է, որ Քսերքսեսի և Երվանդի վերացման մեջ կա անմիջական կապ կա, որն իր հերթին պայմանավորված էր սելևկյանների արևելյան արշավանքի և ասիական տիրությունները պահպանելու խնդիրների հետ։ Քաղաքական ընդհանուր նպատակները և արշավանքի ստրատեգիական նկատառումները դրդած պետք է լինեն սելևկյաններին լուծել հայկական պետությունների հարցը հօգուտ իրենց կառավարիչների, ստրատեգոսների։ Այդ պատճառով շատ հավանական է թվում, որ Արևելյան Հայաստանի նվաճումը, Երվանդի վերացումը, ստրատեգոսների նշանակումը և սելևկյան տիրապետության հաստատումը Հայկական լեռնաշխարհում տեղի է ունեցել Արևելյան արշավանքի նախօրեին, դեպի Ասիայի խորքերը արշավող բանակի թիկունքն ապահովելու համար։ Ն. մ. թ. 210—209 թվերին Անտիոքոսը Մարաստանում էր, որը դարձել էր ռազմական սպասվող գործողությունների բազա[34]։ Պատերազմական կոնկրետ պատրաստությունները տեսնելուց բացի, արշավանքի ֆինանսավորումը ապահովելու ու անհրաժեշտ միջոցներ հայթայթելու համար նա թալանեց Անահիտի տաճարը Համադանում (Պոլիբիոս, XI, 27)։ Շատ հնարավոր է, որ նախքան դեպի արևելք շարժվելը, Անտիոքոսը Մարաստանից սկսեց Հայկական լեռնաշխարհի գործերին միջամտել։ Ծոփքի ինքնուրույնության վերջնական լիկվիդացմանը նախորդել էր, ինչպես երևում է Պոլիբիոսի տեղեկություններից, դիվանագիտական-ցուցադրական մի քայլ[35], իսկ մինչև Երվանդի գործերին ուժով միջամտելը Անտիոքոսը նրա արքունիքն էր ուղարկել իր դիվանագիտական ներկայացուցչին։ Այդ անսպասելի եզրակացությանը մենք գալիս ենք Արմավիրի № 6—7 արձանագրությունների տվյալներից։ Ուսումնասիրողներից միայն Ա. Ի. Բոլտունովան է, որ ուշադրություն է դարձրել այնտեղ հիշատակվող Նումենիոսի վրա, որպես պատմական անձնավորության։ Սակայն, ելնելով այն կանխակալ կարծիքից, որ արձանագրությունները ժամանակակից են Անտիոքոս IV-ին (175—164), նա գտնում է, որ հիշատակվող Նումենիոսը սրա պաշտոնյան էր առաքված Արտաշես I-ի արքունիքը[36]։ Նումենիոսը Անտիոքոս III-ի, թե՞ Անտիոքոս

[33] E. Honigmann, Kommagene, Pauly, Wissowa, Realencyclopadie. Supplementband IV, Stuttgard, 1924, էջ 981։

[34] А. Г. Бокщанин, նշվ. աշխ., էջ 201, ծանոթ. 152։

[35] А. Г. Бокщанин, նշվ. աշխ., էջ 199։

[36] А. И. Болтунова, Греческие надписи Армавира, Изв. Арм. фил. АН СССР, 1942, № 1—2, էջ 52, ծանոթ. 5։

IV-ի պաշտանյան է եղել. այս հարցը դեռևս վեճի առարկա է[37]: Արմավիրի արձանագրությունները, որոնք Երվանդ IV-ի անունից են փորագրված, կամ ամեն դեպքում նրան ժամանակակից էին, ակներև խոսում են ն. մ. թ. III դարի վերջի մի Նումենիոսի մասին, որը պատմական կոնտեքստում կարող է Անտիոքոս III-ի պաշտանյան լինել: № 6 արձանագրությունը նշում է ինչ որ անգից եկած Նումենիոս Հելլենի անունը, իսկ № 7 արձանագրության մեջ նույն այս Նումենիոսը արդեն թագուհուն հաղորդում է կատարված դեպքերի մասին: Այդ դեպքերի բովանդակությունը թագավորի (Երվանդի) սպանությունն էր ու երկրի նվաճումը: Նումենիոսի հաղորդագրության մեջ հաջողվում է կարդալ, որ թագավորի մասին տխուր լուրը «չի պարունակում ոչ մի անփառունակ բան», որ նրան «սպանել են զինվորները» և որ «նա շունչը փչել է զենքը ձեռքին», ըստ որում՝ «նորագահանիստ Հայաստան երկրին տիրապետել են թըշնամիները»[38]: Ինչպես համոզեցուցիչ կերպով ցույց է տվել ակադ. Մանանդյանը, № 7 արձանագրության տվյալները համընկնում են Երվանդի ու Արտաշեսի պատերազմի մասին Մովսես Խորենացու ընդարձակ հաղորդագրություններին, որոնք փոխադարձաբար իրար լրացնում են[39]: Արտաշեսը, որը ըստ երևույթին Հայկական լեռնաշխարհի Ատրպատականյան ծայրամասից էր, Երվանդ IV-ից դժգոհ ավագանիներից էր: Երկրում, Երվանդի օրոք ինչ որ խմորումներ կային, որոնց հեռավոր արձագանքները պահպանվել են «Հայոց պատմության» մեջ (II, 39, 40): Դրանք բացահայտ են դառնում Արտաշեսի հետ պատերազմի ընթացքում, Երվանդը չի վստահում նախարարներին, որոնց շարքում և դավաճանություն է տեղի ունենում (II, 44, 46): Արտաշեսի ձեռնարկած միջո-Հայկական լեռնաշխարհի Ատրպատականյան ծայրամասից էր, Երվանդ օրոք ավագանու շարքերում գոյություն ունեցող խմորումների պատճառի մասին: Ինչպես հայտնի է Արտաշեսը Բագարանի տաճարային ստրուկներին նվիրում է Սմբատ Բագրատունուն, որը բնակեցնում է նրանց իր սեփական ձեռնակերտում (II, 48):

Մյուս միջոցառումը վերաբերում է հողերի բաժանմանը: Արտաշեսը հրամայում է որոշել ագարակների և գյուղերի սահմանները (II, 56), որով պետք է ենթադրել, սահմանազծվում էին մասնատիրական հողամասերը գյուղական համայնքի հողամասերից[40]: Արտաշեսի հետ կապված երկու միջոցառումներն էլ պետք է կարծել, մասնավոր հողատիրության զարգացմանն էին նպաստում:

Երվանդի օրոք, մասնավոր հողատիրության ուժեղացման պրոցեսը անհրաժեշտ աջակցություն կարող է գտած չլինել թագավորի կողմից, որի հետևանքով հողատեր ավագանին ըմբոստանում է, իսկ Արտաշեսը ղեկավարում էր այս շարժումը, որը համընկնում էր Անտիոքոս III-ի նպատակների հետ: Անտիոքոսը Արտաշեսին ստրատեգոս կարգելով Մարաստանից ուղարկում է զորքով Երվանդի դեմ: Սրանց պատերազմի մասին իր հաղորդագրություննե-

37 Ելնելով Պլինիոսի անորոշ վկայությունից (Naturalis Historia. VI, 32) Գուտշմիդը, Դրոյզենը և ինքը՝ Բոլտունովան, հակված են կարծելու, որ Նումենիոսը Անտիոքոս IV-ի պաշտանյան էր: Բուշե-Լեկլերկը և Նիզեն, ընդհակառակը, կարծում են, որ խոսքը Անտիոքոս III-ի պաշտանյայի մասին է (տես А. И. Болтунова, նույն տեղը):

38 Հ. Մանանդյան, Արմավիրի հունարեն արձանագրությունները, Երևան, 1946, էջ 24—30:

39 Նույն տեղում:

40 Г. Саркисян, նշվ. աշխ., էջ 45, ծանոթ. 67:

*րում, Խորենացին լրացուցիչ տեղեկություններ է պահպանել Արտաշեսի Մարաստանից գալու և մարական զորքերից օգտվելու մասին։*

*Խոսելով Երվանդի մտատանջությունների մասին, Խորենացին նշում է. «Բայց Երուանդայ զմտաւ ածեալ, թէ որպիսի չար նորա յանգաւորութեանն անանի ի* Մարս, *խեթ ի սրտի լեալ՝ ոչ հեշտալի էր նմա քուն» (II, 38)։ Երբ Արտաշեսը շարժվում է Երվանդի դեմ, ապա Խորենացու ասելով արքայից արքան Սմբատին տալիս է «մասն ինչ ի զօրացն Ասորեստանի և զզօրս* Ատր*պատականի, զի տարեալ զԱրտաշէս հաստատեսցեն ի գահն հայրենի» (II, 43)։ Ճակատամարտի ժամանակ Արտաշեսի զորքի մասին ասում է. «և* մարաց *զօրացն անցեալ ի կողմն Երուանդական գնդին նախնմաւ ի վերայ գիականցն բանակէին», իսկ մի քիչ ներքև ավելացնում է. «և անուանեաց զհովիտն, ուր ի վերայ գիականցն բանակեցան՝* Մարաց մարգ*» (II, 46)։ Պատերազմը ավարտվելուց հետո «Իսկ Արտաշիսի առեալ զթագաւորութիւնն՝ տայ պարգևս զօրացն* Մարաց *և Պարսից և արձակեաց» (II, 47)։ Այդպիսով Արտաշեսը մարական-ատրպատականյան և զուցե սիրիական (Խորենացու մոտ Ասորեստանի զորքի մասին է խոսքը, բայց այդ ժամանակի համար զուցե ի նկատի ունի Անտիոքի Ասորիքի բանակը) զորքով մուտք է գործում Հայաստան հարավ-արևելյան շրջաններից, պարտության մատնում ու սպանում Երվանդին։ Հետաքրքիր է նշել այստեղ մի մանրամասնություն, որը նկատել է Կ. Վ. Տրևերը № 7 արձանագրության մեջ*[41]*, և որը այս դեպքերի կապակցությամբ իր պատմական իրական իմաստն է ստանում։ Խոսելով թագավորի մահի մասին, Նումենիոսը հաղորդում է, որ* զինվորները *նրան սպանեցին, այնինչ մենք իրավացի կլինեինք սպասելու այստեղ «թշնամիները» բառին։ Սակայն ինչպես տեսանք, Նումենիոսի առկայությունը Երվանդի արքունիքում ինչ-որ մի կապի մեջ էր Արտաշեսի արշավանքի հետ, որի մասնակիցները Նումենիոսի համար թշնամիներ չէին կարող լինել։*

*Ինչպես տեսնում ենք, Խորենացու տվյալները միանգամայն ուշադրության արժանի են, որովհետև նրանք մյուս սկզբնաղբյուրների հետ միասին հնարավորություն են ընձեռում վերականգնելու Ն. մ. թ. III դարի վերջի պատմական իրադրությունը Հայկական լեռնաշխարհում։ Իհարկե բացառված չէ, որ այդ դեպքերը տեղի ունեցած լինեն Սելևկյան արշավի ավարտից անմիջապես հետո, 205—204 թվերին, երբ ասիական երկրները հնազանդեցնելուց հետո, Անտիոքոսը կարող էր մտածել նաև հայկական պետական միավորումների ճակատագրի մասին։ Ամեն դեպքում դարի վերջին այդ հարցերը լուծված պիտի լինեին, քանի որ դրանից հետո Անտիոքոսը իրեն նվիրեց արևմտյան գործերին։ Հայկական լեռնաշխարհում հաստատվեց սելևկյան պետության ստրատեգոսներ Արտաշեսի և Զարեհի իշխանությունը։*

## 5. ՍՏՐԱԲՈՆԻ ՄՈՏ ՀԻՇԱՏԱԿՎԱԾ ՍՏՐԱՏԵԳՈՍ ՏԵՐՄԻՆԻ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Արտաշեսն ու Զարեհը, նախքան թագավոր դառնալը, Ստրաբոնի մոտ անվանված են ստրատեգոսներ* (στρατηγοί) *(XI, 14, 5։ XI, 14, 15)։ Թարգմանիչները սովորաբար այս տերմինը վերարտադրում են որպես զորավար,*

[41] К. В. Тревер, Очерки по истории и культуры древней Армении, М.—Л., 1953, *էջ 147, ծանոթ. 2։*

военачальник, մի բառ, որ այնքան էլ ճիշտ չի համապատասխանում բովանդակությանը (տես Աճառյանի, Մանանդյանի, Միշչենկոյի, Լատիշևի թարգմանությունները)։

Ստրատեգոսի պաշտոնի էության բացահայտմանն օգնում են սելևկյան պետության տվյալները այդ հարցի մասին[12]։

Այս պաշտոնի զարգացման հիմնական բովանդակությունն այն է, որ նա վերջին հաշվով, զինվորական աստիճանից վեր է ածվում պետական, քաղաքացիական պաշտոնի, մարզի կառավարչի, որը որպես այդպիսին սատրապին ետ է մղում պետական վարչությունից, կառավարչությունից։ Սատրապներն իրենց ենթակա տերիտորիաներում անսահմանափակ իրավունքներ ունեին և դրա հետևանքով վեր էին ածվում իսկական կուսակալների և հաճախ անջատողական ձգտումներ էին դրսևորում։

Այս զարգացման առաջն առնելու համար ստրատեգոսները, որոնք մինչև III դարի կեսերը գերազանցապես զորավարներ էին, սկսում են կարգվել մարզային կառավարիչներ։ Այդպիսի նշանակումների կարելի է հանդիպել Անտիոքոս III-ի իշխանության հենց առաջին տարիներին, Մոլոնի՝ Մարաստանի սատրապի ապստամբության ճնշման կապակցությամբ (220 թ.)։ Հաջորդ տարիներին այս ռեֆորմը իրագործվում է ամբողջությամբ։ Առաջին հայացքից այս միջոցառումները իրավամբ նշանակում էին երկրի կառավարման ռազմականացում։ Ստրատեգոսների նշանակումներով, զինվորական սկզբունքները որպես հիմք են ընդունվում պետական կյանքի կառավարչական ասպարեզում։ Հավանական է, որ շատ տեղերում այս նորարարությունը հենվում էր մարզի կայսերական կայազորների ուժի վրա։ Սակայն փաստերը ցույց են տալիս, որ Անտիոքոս III-ի այս ռեֆորմի մեջ միայն պետության գիտակցական ռազմականացումը չէ, որ իր արտահայտությունն է գտել։ Ընդհակառակը, հիմնական ձգտումը եղել է երկրին տալ միատարր, միասնական կառավարչական կազմվածք։ Այդ պատճառով էլ ստրատեգոս տերմինն սկսում է շնորհվել անկախ այն հանգամանքից, թե տվյալ անձնավորությունը ինչ կապ ունի՞ կայսրության զորքի հետ, և անտեսելով նրա հույն, մակեդոնացի կամ բնիկ լինելը։ Այս մասին են խոսում Ստրաբոնի վկայությունները Արտաշեսին ու Զարեհին ստրատեգոս կարգելու կապակցությամբ։ Բնիկ իշխանավորները ստրատեգոսի կոչմանն են արժանանում, թեպետ միանգամայն պարզ է, որ կայսրության զորքերն անբավարար էին հսկայական տերիտորիաները նվաճված պահելու համար։ Այստեղ խոսքը ուրեմն ոչ թե կայսրության զորավարների մասին է, այլ մարզային կառավարիչների՝ զինվորական երևութական տիտղոսով։ Այդ երևում է, ի միջի այլոց, նաև Ստրաբոնի լրացուցիչ տեղեկություններից այն մասին, որ ստրատեգոս կարգվելուց և երկիրը բաժանելուց հետո, Արտաշեսը և Զարեհը իշխեցին իրենց երկրամասերի վրա, մինչև թագավոր դառնալը[43]։

Հայաստանում Անտիոքոս III-ը գործ ուներ ոչ թե իր պաշտոնյաների կամ զորավարների, այլ տեղական իշխանավորների հետ, որոնց, ամբողջ պետու-

[42] H. Bengston, Die Strategie in der hellenistischen Zeit, München, 1944, հ. II, նույնի Politische Geschichte, Der Hellenismus in der deutschen Forschung 1938—1948, Wiesbaden, 1956, էջ 92։

[43] Ակադ. Մանանդյանն այս տերմինը զորավար է թարգմանում, բայց ըստ էության ճիշտ է հասկացել պաշտոնի բովանդակությունը (տես Քննական տեսություն, էջ 116)։

թյան կառավարչական միատարրությունը ապահոված լինելու համար, շնորհվում է ստրատեգոսի կոչում։ Այսպիսով, խոսքը ոչ թե զորավարների մասին է, այլ մարզային կառավարիչների, որոնք օժտված էին նախ և առաջ քաղաքական և քաղաքացիական ֆունկցիաներով։ Իշխանության գլուխ անցնելու հանգամանքները (պատերազմի միջոցով) և անցկացվող ռեֆորմի արտաքին ձևերը, կարող են ծայրագույն դեպքում ենթադրել տալ, որ խոսքը զինվորական կառավարիչների մասին է, բայց նույն, վերը նշված ֆունկցիաներով։ Ստրատեգոս-կառավարչի պաշտոնը յուրացվեց Արտաշեսյանների կողմից։ Հայտնի է, որ Տիգրան II-ի օրոք հայ իշխանավոր Բագադատը նվաճված Ասորիքի և Կիլիկիայի կուսակալ-կառավարիչն էր Անտիոքում, ստրատեգոսի կոչումով (Ապպիանոս, Սիր. գործեր, 48)։ Նույն պաշտոնով է հանդես գալիս ստրատեգոսը նաև պարթևական պետության մեջ։ Մ. թ. 120—121 թթ. մի փաստաթղթում հիշատակվում է ստրատեգոս Մանեսը, որպես Միջագետքի և Պարապոտամիայի կառավարիչ[14]։

Г. А. ТИРАЦЯН

## НЕКОТОРЫЕ ДАННЫЕ «ИСТОРИИ АРМЕНИИ» МОИСЕЯ ХОРЕНСКОГО И «ГЕОГРАФИИ» СТРАБОНА ДЛЯ ИСТОРИИ АРМЕНИИ III—II ВВ. ДО Н. Э.

(Резюме)

В статье привлекается ряд известных, а также неиспользованных данных вышеупомянутых трудов для рассмотрения некоторых вопросов истории древней Армении.

1. Делается попытка ввести в научный оборот отрывок «Истории Армении» (II, 53), рассказывающий о стране Каспиана при Арташесе I. Сличение отрывка со сведениями Страбона по данному вопросу выявляет его историческую достоверность.

2. Рассмотрение двух, на первый взгляд противоречивых, сведений Страбона об Акилисене (XI, 4 : 9; XI, 14 : 5, 12) помогает лучше осмыслить процесс этногенеза на Армянском нагорье, а также процесс образования Арташесидского государства.

3. Анализ отрывков «Истории Армении» о культе предков в древней Армении (II: 8, 40, 49, 77) позволяет отнести учреждение культа предков ко времени правления Ерванда IV (примерно 220—209 гг. до н. э.).

4. Совокупное рассмотрение неиспользованных данных Моисея Хоренского о происхождении Арташеса I (II: 38, 47), первоисточников по истории Антиоха III, а также Армавирских греческих надписей позволяет уточнить время всязанных друг с другом событий, как селевкидское вмешательство на Армянском нагорье, война Ерванда и Арташеса, убиение Ерванда и учреждение стратегии в Армении, имеющие непосредственное отношение к Восточному походу (209—205 гг. до н. э.) Антиоха III, вернее всего к его началу.

[14] M. J. Rostovtzeff, C. Bradford Welles, A parchement contract of loan from Dura Europos on the Euphrates. Yale Classical studies, New Haven, հ. II, 1931, էջ 46—47։

5. Материалы по истории Селевкидского государства также подтверждают, что упомянутый Страбоном по отношению к Армении термин «стратег» имеет значение правителя области.

G. A. TIRATSIAN

## QUELQUES DONNEES DE «L'HISTOIRE D'ARMENIE» DE MOVSES KHORENATSI ET DE LA «GEOGRAPHIE» DE STRABON POUR L'HISTOIRE DE L'ARMENIE AU III^e ET AU II^e SIECLE AVANT NOTRE ERE

L'auteur reprend ici, à la lumière de certaines données connues ou non encore utilisées, quelques questions de l'histoire de l'ancienne Arménie.

1. Il entreprend de consacrer l'intérêt scientifique d'un fragment de «l'Histoire d'Arménie» (II, 53) se rapportant au pays des Caspiens sous Artachès I^er. Une comparaison avec les renseignements fournis par Strabon confirme la véracité historique de ce fragment.

2. Deux données, à première vue contradictoires, de Strabon, relatives à l'Acilisène (XII, 4: 9; XI, 14: 5, 12) nous aident à mieux saisir le processus d'ethnogénie propre au plateau arménien et celui de la formation de l'Etat d'Artaxias.

3. L'analyse du fragment de «l'Histoire d'Arménie» ayant trait au culte des ancêtres dans l'ancienne Arménie (II; 8, 40, 49, 77) permet de reporter ce culte à l'époque du règne de Yervand IV (environ 220—209 avant notre ère).

4. Une étude d'ensemble tant des témoignages de Movsès Khorénatsi sur l'origine d'Artachès I^er (II: 38, 47) que des sources de l'histoire d'Antiochus III et des inscriptions grecques d'Armavir, permet de déterminer la date d'évènements liés entre eux, comme l'intervention des Séleucides dans le plateau arménien, la guerre de Yervand et d'Artachès, la défaite de Yervand et l'instauration en Arménie d'une stratégie, autant de faits qui se rattachent directement à l'époque de la Campagne d'Orient (209—205 avant notre ère) d'Antiochus III ou plus exactement au début de celle-ci.

5. Les documents historiques sur l'Etat des Séleucides viennent confirmer le sens de gouverneur de province du mot «stratège» évoqué par Strabon quant à l'Arménie.